Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1949

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն. Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

# Ի ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԸՆԴԴԵՄ ՆՈՐ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀՐՁԻԳՆԵՐԻ

Օգոստոսի 25—27-ին Մոսկվայում, Միությունների Տան Սյունազարդ դահլիճում տեղի ունեցավ խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսը, որը հրավիրվել էր ՀԱՄԿԽ-ի, Սովետական գրողների միության և Սովետական կանանց հակաֆաշիստական կոմիտեի նախաձեռնությամբ։

Առաջնորդվելով խաղաղության համար պայքարելու ազնիվ նպատակով, ՍՍՌՄ-ի մայրաքաղաքն էին հավաքվել սովետական բազմամիլիոն ժողովրդի պատվիրակները՝ արտադրության նորարարներ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ, բարձր բերքի վարպետներ, սովետական գիտության գործիչներ, կոմպոզիտորներ, արտիստներ, հասարակական և պրոֆմիութենական աչքի ընկնող գործիչներ։ Կոնֆերանսի 1200 դելեգատների մեջ կային ՍՍՌ Միության Գերագույն Սովետի 76 դեպուտատ, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն

Սովետների 139 դեպուտատ, 28,5 միլիոն բանվոր ու ծառայող միավորող 57 պրոֆմիությունների ներկայացուցիչներ, 135 առաջավոր բանվոր, կոլխոզային գյուղացիության 114 ներկայացուցիչ, սովետական ինտելիգենցիայի 166 ներկայացուցիչ, 400 կին։

Կոնֆերանսին ներկա էին նաև արտասահմանյան հյուրեր—խաղաղության մարտիկներ, այն է՝ Հնդկաստանի, Չեխոսլովակիայի, Բուլղարիայի, Ռումինիայի, Հունգարիայի, Ալբանիայի, Չինաստանի, Կորեայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Միացյալ Նահանգների, Անգլիայի, Ավստրիայի և Գերմանիայի ներկայացուցիչները։

Խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսը քաղաքական մեծ նշանակություն ունի։ Նա ցայտուն կերպով ցույց տվեց սովետական ժողովրդի հզոր կամքն ու վճռականությունը՝ բարձր պահել ժողովուրդների խաղաղության և բարեկամության դրոշը, օր ավուր մերկացնել համաշխարհային նոր պատերազմի հրձիգների ոտնձգությունները։

Բոլոր երկրներում միլիոնավոր մարդիկ խորին հույսով են նայում մեր մեծ սոցիա-



լիստական տերության, տեսնելով հանձին նրա խաղաղության և միջազգային համագործակցության անսասան պատվարը։ «Մոսկվայի մատուցած ծառայությունն այն է,— նշել է ընկեր Ստալինը,— որ նա անդուլ կերպով մերկացնում է նոր պատերազմի հրձիգներին և խաղաղության դրոշի շուրջն է համախմբում բոլոր խաղաղասեր ժողովուրդներին։ Հայտնի է, որ խաղաղասեր ժողովուրդները հույսով են նայում Մոսկվայի վրա, որպես խաղաղասեր մեծ տերության մայրաքաղաքի և որպես խաղաղության հզոր պատվարի վրա»։

Այդ իսկ պատճառով խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսի նշանակությունը դուրս է գալիս մեր երկրի սահմաններից։ Այդ իսկ պատճառով կոնֆերանսը, նրա որոշումները և հրատարակած փաստաթղթերը գրավեցին ամբողջ երկրագնդում խաղաղության կողմնակից միլիոնավոր հասարակ մարդկանց ուշադրությունը։

ՍՍՌՄ-ն միշտ եղել է և է՛ խաղաղության դրոշակակիրը, ժողովուրդների ազատության և բարեկամության ջերմ պաշտպանը։ Ահա արդեն ավելի քան երեք տասնամյակ է, որ Սովետական պետությունը հետևողական

անհաշտ պայքար է մղում պատերազմի հըր-
ձիգների դեմ, մերկացնում է իմպերիալիստ-
ների ագրեսիվ պլանները, պայքար է մղում
միջազգային պարտավորությունների անշեղ
կատարման համար, պարտավորություններ,
որոնց նպատակն է ամրապնդել խաղաղու-
թյունը և ժողովուրդների անվտանգությունը։
Սովետական կառավարության առաջին դեկ-
րետը վերաբերում էր խաղաղությանը։ Այդ
դեկրետում հռչակվում էին լենինյան-ստա-
լինյան արտաքին քաղաքականության հիմ-
նական սկզբունքները՝ անշեղ ձգտումն դե-
պի խաղաղություն և բարեխիղճ համագոր-
ծակցություն՝ հիմնված մեծ և փոքր տերու-
թյունների իրավունքը հարգելու վրա։ Այդ
խաղաղասեր քաղաքականությունը բխում է
մեր սոցիալիստական պետության բնույթից
իսկ, կոմունիզմի կառուցման այն հոյակապ
խնդիրներից, որոնք հաջողությամբ լուծում
է սովետական ժողովուրդը։

Սովետական Միությունը միշտ հետևողա-
կանորեն ու անշեղորեն իրականացնում էր
լենինյան-ստալինյան այդ քաղաքականու-
թյունը, գլխավորելով խաղաղության համար
ժողովուրդների կողմից մղվող պայքարը։
Ստալինյան դիվանագիտությունը, սովետա-
կան մամուլը օրեցօր մերկացնում էին մի-



ջազգային ռեակցիայի մեքենայությունները,
հիտլերյան Գերմանիայի և նրա գործակից-
ների պատերազմի նախապատրաստությու-
նը, կոչ անելով ստեղծել դեմոկրատական
պետությունների միասնական ճակատ, ֆա-
շիստական ագրեսիան կանխելու նպատա-
կով։ Անգլիայի, Ֆրանսիայի, ԱՄՆ-ի կառա-
վարող դասակարգերի ռեակցիոն քաղաքա-
կանության հետևանքով, այն ժամանակ
միասնական հակահիտլերյան ճակատ չըս-
տեղծվեց։ Դա օգնեց ֆաշիստական ագրե-
սորներին ծավալելու ամենաարյունահեղ
պատերազմներից մեկը, որը անթիվ զոհեր
խլեց ժողովուրդներից։

Սովետական ժողովուրդը իրեն անթառամ
փառքով պսակեց Հայրենական Մեծ պատե-
րազմի տարիներին։ Հենվելով ազատասեր
բոլոր ժողովուրդների բարոյական օժանդա-
կության վրա, Սովետական Միությունը
ջախջախեց հիտլերյան Գերմանիայի ու իմ-
պերիալիստական Ճապոնիայի ռազմական
մեքենան և փրկեց մարդկությունը ֆաշիս-
տական ստրկացման սպառնալիքից։ Պատ-
մական հաղթանակ տանելով, սովետական
ժողովուրդը վերադարձավ ստեղծարար խա-
ղաղ աշխատանքի, սկսեց բուժել ֆաշիստա-
կան արշավանքի հասցրած վերքերը, իրա-

կանացնել կոմունիստական հասարակու-
թյուն կառուցելու վեհ խնդիրները: Եվ այդ
դժվարին ասպարեզում սովետական մար-
դիկ նորանոր հաղթանակներ են տանում:
Օրեցօր ամրապնդվում է սոցիալիզմի երկրի
հզոր էկոնոմիկան, դնալով ավելի երջանիկ,
ավելի լավ է դառնում սովետական մարդու
կյանքը:

Պայքար մղելով իրականացնելու կոմու-
նիստական շինարարության այն վիթխարի
ծրագիրը, որը ուրվագծել է մեծ Ստալինը,
սովետական ժողովուրդը կենսականորեն շա-
հագրգռված է կայուն ու տևական խաղաղու-
թյամբ, նոր պատերազմի հրձիգների դիտա-
վորությունների մերկացմամբ ու վիժեց-
մամբ: Ստալինյան արտաքին քաղաքակա-
նությունը լիովին համապատասխանում է
սովետական մարդկանց, ինչպես նաև բոլոր
ազատասեր ժողովուրդների այդ կենսական
շահերին: Այդ է վկայում Սովետական Միու-
թյան անդուլ պայքարը՝ գերմանական պրոբ-
լեմը Պոտսդամի որոշումների ոգով արդա-
րացիորեն լուծելու համար, այդ են վկայում
Միավորված Ազգերի Կազմակերպության մեջ
մտցված սովետական առաջարկները ատո-
մային զենքն արգելելու մասին, մեծ տերու-
թյունների սպառազինությունները և զինված



ուժերը կրճատելու մասին, ռազմական պրո-
պագանդան արգելելու մասին, այդ են վկա-
յում Սովետական կառավարության ելույթ-
ները ի պաշտպանություն իմպերիալիստների
կողմից ճնշվող փոքր ժողովուրդների:

Սովետական Միության հետևողական խա-
ղաղասիրական քաղաքականությունը աշխա-
տավոր մասսաների օժանդակությունն է
գտնում ամբողջ երկրագնդում: Եվրոպայի և
մյուս մայր ցամաքների ժողովուրդները գա-
նազան ուղիներով՝ Միավորված Ազգերի
Կազմակերպությանն ուղղված ժողովրդական
հանրագրերով և այլն, բացե ի բաց ցույց
են տալիս իրենց համակրանքը կայուն, դե-
մոկրատական խաղաղության և միջազգային
բարեկամական համագործակցության համար
պայքարելու ստալինյան քաղաքականությա-
նը:

Դա առաջ է բերում իմպերիալիստների
կատաղի ատելությունը: Միջազգային ռեակ-
ցիայի, նոր պատերազմի հրձիգների բոլոր
դավերը ուղղված են ՍՍՌՄ-ի դեմ, վճռաբար
սոցիալիզմի ուղին ոտք դրած ժողովրդական
դեմոկրատիայի երկրների դեմ, օրեցօր ամ-
րապնդվող ամբողջ հակաիմպերիալիստական
ճամբարի՝ խաղաղության, դեմոկրատիայի և
սոցիալիզմի ճամբարի դեմ:

Անգլո-ամերիկյան իմպերիալիստները հույս ունեն ուղղել իրենց խարխլված գործերը, հաղթահարել անողոքաբար վրա հասնող տնտեսական ճգնաժամը, հետաձգել իրենց անխուսափելի կործանման ժամը նոր պատերազմ հրահրելով։

Համաշխարհային տիրապետության պլաններ փայփայելով, անգլո-ամերիկյան իմպերիալիստները առաջ են բերել ռազմական հիստերիա և ամեն կերպ բորբոքում են այն։ Նրանք ամբողջ աշխարհը պատում են ռազմական բազաների ցանցով, պլացդարմներ են կառուցում բոլոր մայր ցամաքներում։ Նրանք դիմում են սպառազինությունների կատաղի մրցավազքին, որի ծախսերը որպես ծանր լուծ ընկած են աշխատավոր մասսաների ուսերին, ստեղծում են ագրեսիվ ռազմական բլոկներ և դաշինքներ։ Նրանք խեղդում են ժողովուրդների դեմոկրատական իրավունքները։

Սակայն արտաքին միջազգային իրադրության գլխավոր առանձնահատկությունն այն է, որ այժմ խաղաղության ուժերը հզոր և անխորտակելի են, ինչպես երբեք չեն եղել առաջ։ «Անցել են այն ժամանակները,— ասված է խաղաղության կողմնակիցների



Համամիութենական կոնֆերանսի դիմումի մեջ, որն ուղղված է ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանության շարժման բոլոր մասնակիցներին,— երբ իմպերիալիստներին հաջողվում էր խաբել մասսաներին և պահպանել այն գաղտնիքը, որի մեջ ծնունդ էին առնում հանցավոր պատերազմները։ Այժմ ժողովուրդները ըմբռնում են ագրեսորների դիտավորությունների էությունը և պարզ տեսնում են, որ պատերազմի հրձիգները աշխարհի ճակատագրի այն տնօրինողները չեն, ինչպես ցանկանում են նրանք պատկերել իրենց։ Այժմ ժողովուրդները ներկայացնում են այնպիսի ուժ, որը ընդունակ է վիժեցնելու իմպերիալիստների հանցավոր դիտավորությունները և պաշտպանելու խաղաղության գործը»։

Ընդարձակվում է խաղաղության կողմնակիցների շարժումը, որը վառ կերպով արտահայտում է ժողովուրդների կամքը՝ վիժեցնել պատերազմի հրձիգների դավերը և անհաղթահարելի պատնեշ ստեղծել նրանց ճանապարհին։ Այդ համաժողովրդական շարժման սկիզբը դրեց ի պաշտպանություն խաղաղության կուլտուրայի գործիչների համաշխարհային կոնգրեսը, որը տեղի ունե-

ցավ անցյալ տարի աշնանը Լեհաստանի Վրոցլավ քաղաքում։ Վրոցլավի կոնգրեսը կոչ արեց կուլտուրայի, գրականության և արվեստի բոլոր գործիչներին իրենց ձայնը բարձրացնել համաշխարհային նոր սպանդի հրձիգների դեմ։ Դրանից հետո շուտով նույնպիսի կոչով միլիոնավոր կանանց դիմեց Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիայի երկրորդ կոնգրեսը։

Խաղաղության կողմնակիցների շարժումը գնալով ավելի ու ավելի էր աճում։ Նրան միանում էին նորանոր կազմակերպություններ։ Այս տարվա գարնանը Փարիզում և Պրագայում տեղի ունեցավ խաղաղության կողմնակիցների առաջին Համաշխարհային կոնգրեսը, որը խաղաղության շարժումը կազմակերպելու հիմքը դրեց։ Արտահայտելով 600 միլիոն մարդու կամքը, կոնգրեսը որոշում ընդունեց՝ ստեղծել խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի մշտապես գործող կոմիտե, մշակեց այդ կոմիտեի գործունեության ծրագիրը։

Փարիզի կոնգրեսը կարևոր էտապ հանդիսացավ խաղաղության համար մղվող պայքարում։ Այդ կոնգրեսն ավարտվելուց հետո շուտով Արևմտյան Եվրոպայի բոլոր



երկրներում տարածվեց Հյուսիս—ատլանտյան պակտի դեմ ուղղված մասսայական ելույթների, գործադուլների և ցույցերի մի ալիք։ Այդ շարժման մեջ առաջատար դեր խաղացին կոմունիստական պարտիաները և մասսայական հասարակական կազմակերպությունները՝ պրոֆմիությունները, կանանց և երիտասարդության միավորումները։ Պատերազմի հրձիգների դեմ մասսաների կողմից մղվող պայքարի ամենաեռուն պահին, Միլան քաղաքում (Իտալիա) գումարվեց Պրոֆմիությունների երկրորդ համաշխարհային կոնգրեսը։ 72 միլիոն կազմակերպված բանվորների և ծառայողների անունից կոնգրեսն արտահայտեց աշխատավորների կամքը՝ վճռաբար պայքար մղել պատերազմի հրձիգների պլանները վիժեցնելու համար և մի մանիֆեստով դիմեց բոլոր երկրների բանվորներին։

Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիան հանդես է գալիս որպես խաղաղության և դեմոկրատիայի լագերի կարևորագույն ջոկատը։ Ֆեդերացիայի նախաձեռնությամբ, Խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեն որոշում ընդունեց՝ հոկտեմբերի

Չ-ին անցկացնել խաղաղության համար պայքարելու միջազգային օր։ Պրոֆմիությունները, մյուս մասսայական կազմակերպությունների հետ միասին, գործուն պատրաստություններ տեսան այդ օրվա համար։

Որ խաղաղության պաշտպանությունը դառնում է բոլոր ժողովուրդների գործը, դրա մասին վկայում են վերջին ժամանակվա այնպիսի փաստեր, ինչպիսիք են՝ խաղաղության ազգային կոնգրեսների հրավիրումը Հունգարիայում և Անգլիայում, խաղաղության համար պայքարելու ամերիկյան մայրցամաքային կոնգրեսի նախապատրաստումը և ուրիշ շատ փաստեր։

Խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսը նոր հզոր խթան կհանդիսանա պատերազմի հրձիգների պլանները վիժեցնելու համար ժողովուրդների մղած պայքարում, մի նոր էտապ խաղաղության կողմնակիցների շարժումը կազմակերպելու գործում։

«Մենք պարտավորություն ենք ստանձնում,— ասված է կոնֆերանսի դիմումի մեջ,— ամեն կերպ պաշտպանել և զարգացնել խաղաղության կողմնակիցների Համաշ-



խարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի պրոպագանդիստական ու կազմակերպական գործունեությունը՝ խաղաղության համար, պատերազմի դեմ պայքարող բոլոր ուժերը համախմբելու ուղղությամբ։

Հանդիսանալով խաղաղության հետևողական ու սկզբունքային կողմնակիցներ, մենք հանդես կգանք ագրեսորների ու նոր պատերազմի հրձիգների ամեն մի ելույթի դեմ, անողոքաբար մերկացնելով աշխատավոր մարդկության դեմ ուղղված նրանց դիտավորությունները։ Դրան կոչում ենք խաղաղության կողմնակիցների բոլոր կազմակերպություններին և այդ հզոր համաժողովրդական շարժման բոլոր մասնակիցներին։

Պատերազմի հրձիգները իրենց առջև կտեսնեն խաղաղության կողմնակիցների ահեղ ճակատը, որը կարող է հետ պահել մարդկության վրա բարձրացված ոճրագործ ձեռքը»։

Այդ խոսքերով արտահայտված են ֆաշիզմի մռայլ ուժերի դեմ հաղթանակ տարած սովետական ամբողջ ժողովրդի՝ ստեղծարար ժողովրդի, տիտան ժողովրդի խոհերն ու իղձերը։ Խաղաղության համար մղվող պայքարը մի ռազմաճակատ է։ Եվ այդ ռազմաճա-

կատում մեր ժողովուրդը, որը գլխավորում է խաղաղության կողմնակիցների հարաճուն շարժումը, կհաղթի։ «Աչալուրջ լինենք, միասնական լինենք և մենք կպաշտպանենք խաղաղության գործը»— ասված է Համամիութենական կոնֆերանսի դիմումի մեջ։

Կոնֆերանսի դիմումը լայն արձագանք կգտնի արտասահմանի միլիոնավոր այն ազնիվ մարդկանց սրտերում, որոնք մեզ հետ միասին պայքար են մղում ժողովուրդների խաղաղության և բարեկամության գործի հաղթանակի համար։

(«Блокнот агитатора» № 25, 1949 г.)

— O —

ԳԱՏՄՈՒՄ ԵՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ԴԵԼԵԳԱՏՆԵՐԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂԱՍԵՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՀՈՒՅՍՆ Է

Այսօր, երբ արյունածարավ գիշատիչ կապիտալիստները, նորանոր շահույթներ ձեռք բերելու համար պատրաստվում են նորից կոտորածի ենթարկել միլիոնավոր աշխատավորների, երբ սովի մատնելով տասնյակ միլիոնավոր մարդկանց, նրանք նոր, ավելի ահռելի պատերազմի նախապատրաստություն են տեսնում, այսօր մենք, սովետական մարդիկս ասում ենք՝ ո՛չ, մենք թույլ չենք տա մարդկությանը նոր պատերազմի մեջ քաշելու, աշխարհի բոլոր խաղաղասեր ու ազատասեր մարդկանց հետ միասին մենք կպաշտպանենք խաղաղության գործը, կկանխենք նոր պատերազմի հրձիգներին։

Պատերազմի հրձիգներին լուրջ նախազգուշացում հանդիսացավ Մոսկվայի խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսը։ Դեպի Սովետական Միությունն են ուղղված բոլոր երկրների միլիոնավոր հասարակ մարդկանց հույսերով լի հայացքները։ Աշխարհի ժողովուրդները

գիտեն, որ Սովետական Միությունը խաղաղության ամենավճռական և հետևողական պաշտպանն է, մեծ և փոքր ժողովուրդների բարեկամը։ Ահա թե ինչու Մոսկվայի կոնֆերանսի օրերին դեպի մեր մեծ հայրենիքի Մեծ մայրաքաղաքն էին ուղղված աշխարհի բոլոր ճնշված ժողովուրդների հայացքները։ Այդ մենք զգում էինք կոնֆերանսի հասցեով ստացվող բազմաթիվ ողջույնի հեռագրերից, կապիտալիստական երկրներից կոնֆերանսին մասնակցելու եկած առաջադեմ գործիչների ելույթներից։

Միլիոնավոր աշխատավոր, ճնշված մարդկանց այդ ներկայացուցիչները կոնֆերանս էին եկել լսելու իրենց մեծ, անշահախնդիր բարեկամի, խաղաղության ու դեմոկրատիայի հետևողական պաշտպանի ու առաջամարտիկի՝ սովետական ժողովրդի խոսքը, եկել էին իրենց ժողովուրդների դառը կյանքի մասին պատմելու, իրենց պատրաստակամությունը հայտնելու խաղաղասեր մեր մեծ Միության գլխավորությամբ խաղաղության գործին պաշտպան կանգնելու իրենց պատրաստակամության մասին։

Ահա ամբիոն է բարձրանում անգլիացի պրոֆեսոր Բերնալը։ Նա պատմում է այն մասին, որ իրենց երկրում, Մեծ Բրիտա-



նիայում, գիտական որոնումների համար կատարվող ծախսերի ավելի քան 60 տոկոսը հետապնդում է ռազմական նպատակներ։ ԱՄՆ-ում գիտական հետազոտությունների համար բաց թողնվող ավելի քան մեկ միլիարդ դոլլարը բացե ի բաց, կամ թաքուն կերպով ծախսվում է ռազմական կարիքների վրա։ Կապիտալիզմի օրոք գիտությունը բերում է ոչ թե երջանկություն, այլ ավերածություն։

Անսահման հուզիչ էր առաջադեմ իտալացիների ներկայացուցիչ, խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի անդամ Պիետրո Նեննիի ելույթը։ Նա ասաց, որ յոթը միլիոն իտալացի կին և տղամարդ, որոնք հակառակ ոստիկանական տեռորին, ստորագրել են Ատլանտյան պակտի դեմ ուղղված խաղաղության հանրաքվեն, երրորդ պատերազմը անխուսափելի չեն համարում։ Այսօր, ինչպես և Ստալինգրադի օրերին,— կոնֆերանսի մասնակիցներին դիմելով ասում է Նեննին,— ձեր անխռովությունը և ձեր ուժը, սովետական բարեկամներ, մեզ համար խթան են հանդիսանում և առույգություն են ներշնչում մեզ։

Դեպի Սովետական Միությունը ունեցած

անսահման սիրով ու երախտագիտությամբ էր լցուն չին ժողովրդի հասարակական գործիչ Լին Ցյան-յունի ելույթը։ «Մենք ուզում ենք ձեզ ասել,— հայտարարեց նա,— որ չին ժողովուրդը շատ է սիրում և հարգում սովետական ժողովրդին։ Հոկտեմբերյան ռեվոլյուցիայի պահից մենք հասկացել ենք, որ Սովետական Միությունը չին ժողովրդի ամենահուսալի բարեկամն է։ Չին ժողովուրդը սիրում է խաղաղություն և վճռականորեն պաշտպանում է այն։

Կապիտալիզմի լծի տակ գտնվող երկրների աշխատավոր ժողովուրդների՝ պատերազմի դեմ, խաղաղության համար պայքարելու վառ ապացույցներ էին կոնֆերանսի հասցեով աշխարհի բոլոր ծայրերից եկած հեռագրերը։ Այդ հեռագրերում խոսվում էր այն մասին, որ իրենք, աշխատավոր մարդիկ պատերազմ չեն ուզում, որ պատերազմի դեպքում նրանք զենքը շուռ կտան պատերազմի հրձիգների դեմ։ Խաղաղ օվկիանոսում գտնվող կղզիներից մեկում ապրող բնակիչները հայտնում էին, որ Սովետական Միության դեմ պատերազմ ծագելու դեպքում նրանք զենքը ձեռքերին դուրս կգան նրա թշնամիների դեմ։ Լատինական Ամերիկայից նավթագործները գրում էին. «Խոստ-



րում ենք հաղորդել Սովետական Միության դելեգատներին, որ իմպերիալիստների կողմից Սովետական Միության դեմ պատերազմ հրահրելու դեպքում, մենք, նավթագործներս, առաջին իսկ օրը կայրենք ամբողջ նավթը և ոչ մի կաթիլ վառելանյութ չենք տա իմպերիալիստներին»։

Սովետական մեծ Միության գլխավորությամբ օր ավուր աճում ու ամրապնդվում է դեմոկրատիայի և խաղաղության ճակատը, այսօր այդ ճակատում է գտնվում երկրագնդի մարդկության կեսից ավելին, այդ ճակատին համակրում են երկրագնդի բոլոր աշխատավոր մարդիկ։ Եվ որքան էլ գազազեն մարդկային արյան ծարավ կապիտալիստները, անգլո-ամերիկյան ռեակցիոն կլիկը և նրա արբանյակները, չեն կարող շուռ տալ պատմության անիվը։ Կապիտալիզմի դարն անցել է, սկսվել է առաջադիմության, կոմունիզմի դարը, մարդկությունը կընթանա կոմունիզմի ուղիով, Մարքսի, Էնգելսի, Լենինի ու Ստալինի գծած ուղիով։

ՍԻՄԱԿ ՍԱՀԱԿՅԱՆ

Մոսկվայի խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսի մասնակից

—o—

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀՐՁԻԳՆԵՐԸ ԿՈՉՆՉԱՑՎԵՆ

*Մոսկվայի խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսը, որը հանդիսացավ խաղաղությունը պաշտպանելու սովետական ժողովրդի հզոր կամքի ցուցադրումը, դելեգատներիս վրա անջնջելի տպավորություն թողեց։ Գտնվելով Սովետական Մեծ Միության ժողովուրդների՝ Մոսկվա հավաքված ներկայացուցիչների մեջ, մենք մեկ անգամ ևս ցայտուն կերպով տեսանք, թե որքան միաձույլ ու հզոր է մեր ժողովուրդը, թե որքան խաղաղասեր ու մարդասեր է նա, թե ինչպես են սովետական մարդիկ սիրում իրենց սոցիալիստական Հայրենիքը, ինչպես համախմբված են հարազատ բոլշևիկյան պարտիայի, մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։*

*Նայում ես շուրջդ և սիրտդ բերկրանքով է լցվում— ահա թե ինչումն է մեր ուժը, ահա թե ինչու սովետական մարդիկ չեն վախենում ոչ մի սպառնալիքից և վստահ նայում են վաղվա օրվան։ Այդ վստահությունը, Հայ-*



*րենիքի համար այդ հպարտությունն էր ըզգացվում ամեն մի դելեգատի ելույթում։*

*Կոնֆերանսում տիրում էր մի միտք՝ սովետական մարդիկ չեն ցանկանում պատերազմ, սովետական մարդիկ խաղաղություն են ցանկանում ամբողջ աշխարհի մարդկության համար։*

*Դելեգատ Կ. Սիմոնովն ասաց.*

*«Սովետական ժողովուրդը պատերազմ չի ուզում ոչ թե նրա համար, որ նա իրեն թույլ է զգում։ Ո՛չ, ինչպես մոտիկ անցյալը ցույց տվեց, Սովետական ժողովուրդը հզոր է և ուժեղ... Մենք պատերազմ չենք ուզում նախ և առաջ նրա համար, որ սիրում ենք մարդկությունը, սիրում և բարձր ենք գնահատում նրա ստեղծագործական հանճարի արդյունքները։ Մենք չենք ուզում, որ մարդկության լավագույն մասը՝ երիտասարդությունը նորից գնա պատերազմի անկուշտ երախը։ Մենք պատերազմ չենք ուզում այն պատճառով, որ խաղաղությունը մեզ համար անհրաժեշտ է կոմունիզմի՝ մեր մեծ նպատակի իրականացման համար»։*

*Սովետական ժողովրդին պատերազմ պետք չէ, որովհետև նա զբաղված է իր վեհ նպատակի իրականացման՝ կոմունիստական հասարակակարգի կառուցման հոյակապ գոր-*

ծով։ Կոմունիզմի գաղափարը այլևս ուտոպիական չէ, այդ գաղափարը Սովետների երկրում իրականության է վերածվում։ Հենց այդ է, որ գազազեցնում է աշխատավոր մարդկանց շահագործման վրա իրենց գոյությունը պահպանող կապիտալիստներին, կոմունիզմի հաղթական ընթացքից սարսափած՝ նրանք տենդագին կերպով պատերազմի են նախապատրաստվում։

Սովետական մարդկանց խաղաղասիրության, նրանց ստեղծագործ աշխատանքի փայլուն ապացույց էին Մոսկվայի «Կալիբր» գործարանի անվանի վարպետ Նիկոլայ Ռոսսիյսկու խոսքերը։ Ինչպես և ամեն մի սովետական բանվոր, ասաց նա, ես հաստատ գիտեմ՝ ինչ արվել է իմ ձեռքով, ինչ արվել է ինձ նման միլիոնավոր սովետական աշխատավորների ձեռքով, ծառայում է մեր հիանալի հայրենիքի հետագա ամրապնդմանը, ծառայում է ամբողջ աշխարհում խաղաղության հետագա ամրապնդմանը։ Մենք չենք ցանկանում և թույլ չենք տա, որ պատերազմը նորից ընդհատի մեր ստեղծարար աշխատանքը, ոչնչացնի մեր համառ աշխատանքի պտուղները։ Մենք ցանկանում ենք առաջ մղել մեր գիտությունը, տեխնիկան ու կուլտուրան, ավելի գեղեցիկ, հարուստ, ա-



վելի հզոր դարձնել մեր Հայրենիքը, էլ ավելի բարձրացնել աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակը։

Այո, սովետական մարդկանց պատերազմ հարկավոր չէ, որովհետև այն ոչնչացնում է մեր սեփական ձեռքերով կառուցած մեր քաղաքներն ու գյուղերը, խլում մեր մարդկանց կյանքերը։ Պատերազմը հարկավոր էր Հիտլերի նման մարդակերներին, այն հարկավոր է ամերիկյան ու անգլիական ֆաշիստներին ու նրանց գործակալ տիտոներին։ Այդ նրանք են ցանկանում նորից հրի ու սրի մատնել մեր երկիրը և հաստատ կերպով սոցիալիզմի ուղին բռնած ժողովրդական դեմոկրատիայի երկրների, ստեղծագործական շինարարական աշխատանքներն ընդհատել։

Բայց խաղաղասեր հզոր Սովետական Միությունը, աշխարհի խաղաղասեր ժողովուրդները թույլ չեն տա անգլո-ամերիկյան ռեակցիոն բլոկին մարդկությանը նոր պատերազմի մեջ քաշելու։ Ուկրաինայի Խերսոնի մարզի Ստալինի անվան կոլխոզին վերջին պատերազմը հասցրեց 45 միլիոն ռուբլու վնաս, պատերազմի հետևանքով կոլխոզում որբ և կիսաորբ մնաց 417 երեխա։ Եվ ահա իրենց դելեգատ Լիտովչենկոյին Մոսկվա, խաղաղության կոնֆերանս ուղարկելով,

կոլխոզնիկները նրան պատվիրել էին. «Ասա, ընկեր Լիտովչենկո, Անգլիայի և Ամերիկայի ներկայացուցիչներին, եթե նրանք կոնֆերանսում լինեն, որպեսզի նրանք նախազգուշացնեն իրենց երկրների կառավարություններին, որ մենք խաղաղությունը չենք խնդրում, այլ խաղաղությունը պահանջում ենք և որ խաղաղության գործը վճռում են և կըվճռեն սովետական մարդիկ իրենց մոտ, ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլխոզներում ու սովխոզներում, գիտահետազոտական ինստիտուտներում և լաբորատորիաներում։ Այս բանում մեզ օգնում են և կօգնեն ամբողջ աշխարհի խաղաղության կողմնակիցները»։

Ահա այսպիսի մթնոլորտում անցավ ամբողջ կոնֆերանսը, որի յուրաքանչյուր մասնակից տուն վերադարձավ մի հաստատ համոզմամբ՝ Սովետական Մեծ և հզոր Միության գլխավորած խաղաղության ու դեմոկրատիայի ուժերը անպարտելի են, պատերազմի հրձիգները կոչնչացվեն։

Մ. ԲԱԲԱՋԱՆՅԱՆ

**Խաղաղության կողմնակիցների Համամիութենական կոնֆերանսի մասնակից։**



# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԱՄԱՐ

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակը 4 տարում կատարելու նշանաբանով մեր երկրի աշխատավորները, բոլշևիկյան պարտիայի գլխավորությամբ հաղթականորեն առաջ են ընթանում դեպի կոմունիզմ։ ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության հաջողում վերելքը պայմանավորված է միլիոնավոր աշխատավորների սոցիալիստական բարձր գիտակցությամբ, նրանց ակտիվությամբ ու ստեղծագործ նախաձեռնությամբ։

Սովետական ժողովրդին միայն յուրահատուկ այդ ստեղծագործական ուժերի բուռն ծաղկումը տեղի է ունենում աշխատանքի կազմակերպման կոմունիստական մեթոդի՝ սոցիալիստական մրցության լայն ծավալման հիման վրա։

Սոցիալիստական մրցության համաժողովրդական բնույթը աշխատավորների շարքերից ամեն օր ու ամեն ժամ ծնում է նորանոր տաղանդներ, որոնք հայրենասիրական

նորարարություններով, աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդներով բազմապատկում են աշխատանքի արտադրողականությունը, արագացնում ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերը։

Համաժողովրդական ճանաչում գտած անվանի նորարարներ Ալեքսանդր Չուտկիխի, Մարիա Ռոժնևայի, Լիդիա Կոնոնենկոյի և ուրիշների անունների շարքում է գտնվում Տրյոխգորնայա մանուֆակտուրայի ֆաբրիկայի վարպետի օգնական Վլադիմիր Վորոշինի անունը։ Նրա հայրենասիրական նախաձեռնությամբ ու առաջարկությամբ համաժողովրդական մրցություն սկսվեց արտադրության կուլտուրան բարձրացնելու, սարքավորումների բարձր արտադրողականություն ապահովելու, հումքը, օժանդակ նյութերը, արտադրության մնացուկները խնայողաբար ծախսելու համար։

Արտադրության բարձր կուլտուրան սոցիալիստական արտադրության յուրահատուկ գիծն է, որն ապահովում է բանվորների աշխատանքի բարձր արտադրողականությունը։ Այժմ, երբ մեր գործարաններն ու ֆաբրիկաները լրիվին հագեցված են առաջնակարգ տեխնիկայով, արդյունաբերության աշխատողների առաջ խնդիր է դրվում՝ ապահովել



նրանց բարձր արտադրողականությունը, իսկ այդ հնարավոր է այն դեպքում, երբ օրինակելի մաքրություն, բոլշևիկյան կարգ ու կանոն է հաստատված ձեռնարկությունում։

Մյուս կողմից այժմյան պայմաններում, երբ բարձր որակի արտադրանք թողարկելու համար ավելացել է պահանջկոտությունը արտադրական ձեռնարկությունների նկատմամբ, անհրաժեշտ է ավելի քան լարված ու տևական աշխատանք արտադրության կուլտուրան բարձրացնելու համար, որովհետև հայտնի է, որ բարձրորակ արտադրանք կարող են տալ այն ձեռնարկությունները, ուր անհրաժեշտ կարգ ու կանոն է ստեղծված։

ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսում «Արդյունաբերության և տրանսպորտի բնագավառում պարտիական կազմակերպությունների ոմնեցած խնդիրների մասին» տված իր զեկուցման մեջ ընկեր Մալենկովը նշում էր.

«Լենինը բազմիցս խարանել է անտրնտեսավարության, թափթփվածության, կեղտոտության, անկուլտուրականության երևույթները: Լենինը ասում էր, թե մենք չենք կարողանա կատարել մեր պարտքը, եթե պատերազմ չմղենք կա-

պիտալիզմի այդ տրադիցիաները պաշտպանողների դեմ»:

*ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսի որոշման մեջ նշված է.*

«Առանց մաքրության և կարգ ու կանոնի անհնարին է ժամանակակից ձեռնարկության նորմալ աշխատանքը: Կեղտոտությունը թափթփվածության, դիսցիպլինայի խախտվածության, անկարգապահության, գործարանում, ֆաբրիկայում, երկաթուղում կարգ ու կանոնի բացակայության անխուսափելի ուղեկիցն է և աղբյուրը: Առանց արտադրության մեջ տարրական կուլտուրա ունենալու անհնարին է ապահովել մեր արդյունաբերության և տրանսպորտի հետագա վերելքը»:

*Ահա թե ինչու համաժողովրդական պայքար է ծավալվում արտադրության բարձր կուլտուրայի համար, որը ստալինյան նոր հնգամյակի վճռական տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու երաշխիքներից մեկն է հանդիսանում։*

*Արտադրության բարձր կուլտուրայի ստեղծումը՝ այդ գործարանում, ֆաբրիկայում, ցեխերում միայն անհրաժեշտ մաքրության*



*ստեղծումը չէ։ Արտադրության բարձր կուլտուրան իր մեջ ընդգրկում է նաև կատարելագործված տեխնոլոգիայի, ավտոմատիզացիայի արմատավորում, աշխատատար պրոցեսների հետագա մեքենայացում, արտադրության մեջ սովետական առաջավոր տեխնիկայի, ստախանովյան առաջավոր մեթոդների արմատավորում, աշխատանքի կազմակերպման ու արտադրության ղեկավարության արմատական բարելավում։*

*Արտադրության բարձր կուլտուրա դա նշանակում է գործի այնպիսի կազմակերպում, երբ ձեռնարկությունն աշխատում է ռիթմիկ կերպով, իր առաջադրանքները կատարում է ըստ կայուն գրաֆիկի, առանց ընդհատումների։*

*Հետևելով Վլադիմիր Վորոշինի հայրենասիրական նախաձեռնության օրինակին, Երևանի Ստալինյան ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունների բանվորները, տեխնիկներն ու ինժեներները, մտնելով սոցիալիստական մրցության մեջ, մասսայական պայքար են ծավալել արտադրության կուլտուրան բարձրացնելու համար։*

*Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը իր ուժերով ծառապատեց գործարանի և արտադրական կորպուսների շրջապատը, վերանո-*

րոզեց և սպիտակեցրեց շենքերը։ Զգալի գործ կատարվեց գործարանի տերիտորիայի բարեկարգման ուղղությամբ՝ ասֆալտապատվեցին ճանապարհները, անցկացվեց արտաքին էլեկտրալուսավորություն և այլն։

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանը առանձնացրել է հատուկ բրիգադա, որը պետք է կարգավորի գործարանի տերիտորիան, կանաչապատի ու ծառուղիներ անցկացնի։ Բրիգադայի աշխատանքի առաջին արդյունքները տեսանելի են գործարանը մտնող յուրաքանչյուր մարդու համար։

Արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվները միաժամանակ լայն պայքար են տանում ցեխերը կուլտուրական տեսքի բերելու համար։ Էլեկտրամեքենաշինական գործարանի տրանսֆորմատորի ցեխը, որի պետն է ընկ. Վ. Ադամյանը, աչքի է ընկնում իր կուլտուրական տեսքով։ Առաջ այդ ցեխի հավաքման տեղամասում դետալների տեղափոխությունը կատարվում էր տարբեր տեղերով, անկանոն ձևով և առաջ էր բերում թափթփվածություն ու հավաքման համար ժամանակի ավելորդ ծախսում։ Այժմ հատուկ տեղեր են նշանակված ոչ միայն այդ դետալների համար, այլ յուրաքանչյուր վարպետի, ենթավարպետի համար պայմաններ է ստ-



տեղծված կիսաֆաբրիկատի, աշխատանքի պրոցեսում օգտագործվող գործիքների, արտադրական մնացորդների հավաքման համար։ Այս ցեխում ամեն իր գտնվում է նշանակված տեղում, մի հանգամանք, որը ոչ միայն այդ իրը ապահովում է փչացումից, այլև հնարավորություն է ստեղծում արդյունավետ դարձնելու աշխատանքային ամեն մի րոպեն։ Այդպիսի կուլտուրական տեսքի է բերված նաև Կիրովի անվան, Կաբբիդի, Ավտոդետալ և մի շարք այլ գործարանների ու ֆաբրիկաների բազմաթիվ ցեխեր ու արտադրական տեղամասեր։

Ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները չեն բավարարվում արտադրության տեղամասերը կուլտուրական տեսքի բերելով միայն. նրանք միաժամանակ պայքար են ծավալում աշխատատար պրոցեսների մեքենայացման, ավտոմատիզացման արմատավորման համար։ Կիրովի անվան գործարանի №№ 1—7, 1—8 ա, 1—8 բ, 1—10 ցեխերի կոլեկտիվները, մտցնելով ավտոմատիկ հարմարություններ, թեթևացրին ու պարզեցրին մի շարք ագրեգատների սպասարկումը. դրանով իսկ ավելի բարձրացվեց աշխատանքի արտադրողականու-

թյունը, կրճատվեցին տեխնոլոգիական պրոցեսների խախտման դեպքերը։

Արտադրության կուլտուրան բարձրացնելու համար մղվող համաժողովրդական պայքարի ծավալման, առաջավոր բանվորների փորձի ու մեթոդների մասսայականացման գործում զգալի աշխատանք են կատարել արտադրական ձեռնարկությունների ագիտատորները։

Ավտոդետալ գործարանի մեխանիկական ցեխի ագիտատոր Բ. Բալասանյանը, սերտ կապված լինելով ցեխի աշխատողների հետ, ուսումնասիրում է նրանց յուրաքանչյուր նոր նախաձեռնությունը և արտադրության կուլտուրան բարձրացնելու հարցի առթիվ իր զրույցները կապում է հենց իրենց ցեխից վերցրած կոնկրետ օրինակների հետ։ Այսպես իր զրույցներից մեկում խոսելով Վլադիմիր Վորոշինի նախաձեռնության մասին, նա օրինակ բերեց այդ նույն ցեխի հղկող բանվոր Ռ. Մելիքյանի աշխատանքի փորձը։ Ագիտատորը ցույց տվեց, թե ինչպես Մելիքյանի մոտ բոլոր տեսակի անհրաժեշտ գործիքները, հղկման ենթակա ու պատրաստի դետալները գտնվում են իրենց որոշակի տեղերում, որի հետևանքով նա ավելորդ ժամանակ չի ծախսում դրանք օգտագործելու



համար։ Վերլուծելով Մելիքյանի աշխատանքի ձևերն ու մեթոդները, ագիտատոր Բալասանյանը ցեխի բանվորներին ցույց է տալիս, որ իր տեղամասում իսկական կարգ ու կանոնի ստեղծման շնորհիվ, ինչպես նաև առաջավոր մեթոդների արմատավորմամբ նա կարողանում է իր արտադրական պլանը կատարել 300—350 տոկոսով։

Արդյունաբերական ձեռնարկություններում արտադրության բարձրացման գործում խոշոր անելիքներ ունեն տեղերի պարտիական կազմակերպությունները և նրանց ագիտկոլեկտիվները։ Խորը կերպով թափանցելով արտադրության բոլոր հարցերի մեջ, ագիտատորները պետք է վեր հանեն արտադրության կուլտուրայի ասպարեզում եղած բացերն ու թերությունները, օգնեն վերացնելու դրանք։ Ագիտատորները պետք է ձգտեն այն բանին, որ իրենց ձեռնարկությունում արտադրության բարձր կուլտուրա ստեղծվի նրա ամեն մի անկյունում և աշխատամասում, որպեսզի բանվորների համար ստեղծվեն ավելի արդյունավետ, կուլտուրական աշխատանքի պայմաններ։

Բ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ՀԿ(բ)Պ Երևանի Ստալինյան ռայկոմի քարտուղար

## ՊԵՏՈՒԹՅԱՆԸ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԲԱՄԲԱԿ

Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան կոլխոզն այս տարի աճեցրել է բամբակի առատ բերք: Կոլխոզնիկները պարտավորություն են վերցրել պետությանը բամբակի հումքի հանձնման առաջադրանքը կատարել պլանով նախատեսված ժամկետից մեկ ամիս շուտ, լրացուցիչ կերպով հայրենիքին տալով մեծ քանակությամբ բամբակ:

Ստորև մենք տպագրում ենք այդ կոլխոզի վարչության նախագահի և մի երկու առաջավորների նյութերն այն մասին, թե նրանք ինչպես են պայքարում վերցրած պարտավորությունները պատվով կատարելու համար:

Գ. ՄԽՍՐՈԲՅԱՆ
(Կոլխոզվարչության նախագահ)

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՆԱԽԱՊԱՅՄԱՆՆ Է

Վերջին երեք տարիների ընթացքում հաստատուն կերպով աճում է մեր կոլխոզի բամբակի դաշտերի բերքատվությունը: Եթե 1947 թվականին կոլխոզի բամբակի ցանքերի յու-



րաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 12,7 ցենտներ, 1948 թվականին՝ 17,8 ցենտներ, ապա այս տարի մենք խոստանում ենք հեկտարից 23—25 ցենտներ միջին բերք: Այս հաջողությունները հետևանք են ինչպես ագրոկանոնների ճիշտ կիրառման, աշխատանքների մեքենայացման, այնպես և կոլխոզնիկների անձնվեր, խանդավառ աշխատանքի:

Բայց բարձր բերք աճեցնելը դա դեռ հայրենիքին շատ բամբակ տալ չի նշանակում. մենք հարազատ պետության հանդեպ մեր պարտավորությունները կկատարենք միայն այն դեպքում, երբ ժամանակին, անկորուստ և բարձր որակով հավաքենք ամբողջ բամբակը և հանձնենք պետական պահեստները: Իսկ այդ կատարելու համար պահանջվում է աշխատանքի ճիշտ կազմակերպում կոլխոզում, յուրաքանչյուր բրիգադայում և օղակում: Ինչպես մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինն է սովորեցնում՝ բերքահավաքը դա սեզոնային գործ է, ժամանակին հավաքեցիր՝ շահեցիր, ուշացար գործը տանուլ կըտաս: Այդ իսկ տեսակետից բերքահավաքի ժամանակ աշխատանքն այնպես պետք է կազմակերպվի, որ լրիվ չափով օգտագործվեն

կոլխոզի բոլոր աշխատող ձեռքերը, օրվա յուրաքանչյուր ժամը։

Նախքան բերքահավաքն սկսելը կոլխոզվարչությունը պարտիական կազմակերպության օգնությամբ լրիվ չափով նախապատրաստեց պահանջվող ինվենտարը՝ ավտոմեքենաները, սայլերը, պարկերը, պահեստային ծածկերը, չորանոցները և այլն։

Կոլխոզվարչությունը կոլխոզի ընդհանուր ժողովում քննության դրեց բամբակի բերքահավաքն անցկացնելու հարցը, նրա վերաբերյալ պետական առաջադրանքները։ Իրենց ելույթներում կոլխոզնիկները միահամուռ կերպով նշում էին, որ այս տարի նրանք պլանով նախատեսված 19 ցենտների փոխարեն յուրաքանչյուր հեկտարից պետությանը կտան 22—23 ցենտներ բամբակ, որ կարող են պետության առաջադրած ժամկետները կրճատել 20—25 օրով և վերջապես, որ իրենցից յուրաքանչյուրը պլանով սահմանված 40 կիլոգրամի փոխարեն օրական կհավաքի 80—100 կիլոգրամ բամբակ։

Ելնելով ընդհանուր ժողովի որոշումներից կոլխոզվարչությունը յուրաքանչյուր բրիգադայի և օղակի համար կազմեց հանդիպական պլաններ։ Սահմանվեց այնպիսի կարգ, ըստ որի յուրաքանչյուր երեկո բրիգադները



զեկուցում են կոլխոզվարչությանը իրենց օրվա առաջադրանքը կատարելու մասին, ինչպես և նկատված թերությունների և դրանց պատճառների մասին, անում են իրենց առաջարկները հաջորդ օրվա համար և ստանում համապատասխան ցուցումներ։

Կոլխոզի ընդհանուր ժողովի որոշմամբ վարչությունը առանձնացրեց 50 հազար ռուբլի բերքահավաքի առաջավորներին պարգևատրելու համար, հիմնական ցուցանիշ ընդունելով պետությանը հանձնած բամբակի հումքի որակը։

Որակի նկատմամբ կոնկրետ հսկողություն սահմանելու համար և այդ հարցում դիմազրկություն թույլ չտալու նպատակով կոլխոզվարչությունը հավաքած բամբակի պարկերի վրա նշումներ է կատարում, որը հիմք է ծառայում լավ և վատ աշխատողների անունները ցուցանիշների տախտակում հրապարակելու համար։

Եվ ահա կոլխոզի աշխատավոր ձեռքերի ճիշտ օգտագործումը, աշխատանքի հաջող կազմակերպումը այսօր իր դրական արդյունքներն է տալիս։ Կոլխոզում 200 մարդ յուրաքանչյուրն օրական հավաքում է 100 կիլոգրամ բամբակ, 40 մարդ՝ 100—200 կիլոգրամ և 7 մարդ հավաքում են 200 կիլո-

գրամից ավելի, պլանով նախատեսված 40 կիլոգրամի փոխարեն: Իսկ կոլխոզի անվանի օղակավարուհիներ Ռոզա Մինասյանը և Թուրաստան Պողոսյանը սահմանեցին բամբակի հավաքման ռեկորդներ, առաջինը մեկ օրում հավաքելով 593 կիլոգրամ, իսկ երկրորդը՝ 508 կիլոգրամ բամբակ:

Կոլխոզը յուրաքանչյուր օր պետությանը հանձնում է 20—23 տոննա բամբակ, պլանով տրված 16 տոննայի դիմաց:

Այս տարի պետությանը հանձնած հումքի 90 տոկոսը առաջին տեսակի է, հանձնված է նաև զգալի քանակությամբ ընտիր տեսակի բամբակ: Իսկ վատորակ հումքի հանձնման դեպք չի եղել:

Բամբակի բերքահավաքի ընտգավառում մեր կոլխոզի ձեռք բերած հաջողություններից և կոլխոզնիկների մեջ տարվող աշխատանքային խանդավառությունից ելնելով կարելի է ասել, որ մենք պատվով կկատարենք մեր վերցրած պարտավորությունները:

---

ՌՈԶԱ ՄԻՆԱՍՅԱՆ
(Օղակավարուհի)

## ԼՐԻՎ ՉԱՓՈՎ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՏԵԽՆԻԿԱՆ

Ես և իմ օղակի յուրաքանչյուր անդամ մի ցանկություն ունենք, մի հաստատ որոշում՝ մայր Հայրենիքին տալ որքան կարելի է շատ բարձրորակ բամբակ, պատվով կատարել սոցիալիստական մրցությամբ մեր վերցրած պարտավորությունները: Որոշումը կենսագործելու համար մենք ոչ մի ջանք չխնայեցինք մեր բամբակի դաշտերը ագրոտեխնիկայի կանոնների համաձայն մշակելու համար և աճեցրինք բարձր բերք: Բամբակի բերքահավաքն սկսելու առաջին իսկ օրից մենք պայքարում ենք առատ բերքն անկորուստ և բարձր որակով հավաքելու և պետական պահեստները հանձնելու համար:

Ինչպե՞ս ենք մենք կատարում բամբակի բերքահավաքը: Նախ պետք է ասեմ, որ մեր օղակում աշխատանքային բարձր կարգապահություն է տիրում, բոլորս սերտորեն կապված ենք իրար հետ, օգնում ենք միմյանց, ոգևորվում մեկս մյուսի հաջողություններով:

Բերքահավաքի հենց սկզբից մեզանից յուրաքանչյուրը պարտավորություն ստանձնեց՝ կրկնակի, եռակի անգամ գերակատարել չանաքի օրական պլանը և հաջողությամբ կատարում է այդ պարտավորությունը։ Ես անձամբ օրական կատարում էի 4—5 նորմա։

Բայց ահա սեպտեմբերի 15-ին մենք լսեցինք, որ Էջմիածնի շրջանի Ներքին Ջեյվա գյուղի կոլխոզի օղակավարուհի Սիրվարդ Արշակյանը մեկ օրում հավաքել է 463 կիլոգրամ բամբակ։ Այդ լուրը խանդավառությամբ լցրեց իմ սիրտը, այն, ինչ արել է Սիրվարդը, մտածեցի, կարող եմ անել և ես։ Եվ որոշեցի գործով պատասխանել անվանի օղակավարուհուն։ Սակայն ինձ կանխեց մեր կոլխոզի առաջավոր օղակավարուհի Բուրաստան Պողոսյանը, որը սեպտեմբերի 16-ին հավաքեց 508 կիլոգրամ բամբակ։ Բայց այդ ինձ ոչ թե վհատեցրեց, այլ ավելի քաջալերեց. ուրեմն Սիրվարդի օրինակը եզակի չէ, այդպես կարող է աշխատել յուրաքանչյուր չանաքավոր, անհրաժեշտ է միայն օգտագործել նրանց փորձը և սեփական հնարավորությունները։ Խորհրդակցելով Բուրաստանի հետ ես մեկ անգամ ևս համոզվեցի, որ ճարպկության, վարպետության



հետ միասին պետք է նաև գիտենալ ճիշտ օգտագործել ժամանակը, աշխատանքային օրվա յուրաքանչյուր րոպեն։ Եվ ես նախօրոք աշխատանքս կազմակերպեցի այնպես, որ ոչ մի րոպե անտեղի չվատնեմ, չէ՞ որ ես երկու րոպեում կարողանում եմ հավաքել մոտ մեկ կիլոգրամ բամբակ։

Սեպտեմբերի 17-ին ես դաշտ դուրս եկա մթնաշաղին և ընտրեցի լավ բացված հողակտոր։ Երբ գոգնոցս լցվեց, ես չգնացի այն դատարկելու դաշտի եզրին դրած պարկի մեջ, ինչպես անում էի մինչև այդ, այլ ուղղակի դատարկեցի մարգում, հարմար տեղում նախօրոք նախապատրաստած պարկը։ Այդպիսով ես շահեցի 3 րոպե։ Իսկ ամբողջ օրվա ընթացքում այդ իզուր «ճանապարհորդությունները» կրճատելով՝ ես շահեցի մոտ 110 րոպե, որի ընթացքում հավաքեցի մոտ 50 կիլոգրամ բամբակ։

Չանաքավորի համար մեծ նշանակություն ունի մատների արագաշարժությունը, որը պետք է ձեռք բերել սիստեմատիկ վարժությամբ։ Բացի այդ, չանաքավորը պետք է մի հայացքով որոշի, թե որ կնգուղներն է վերցնելու, որպեսզի ժամանակ չկորցնի դրանք փնտրելու վրա և կարողանա պահպանել հումքի որակը։ Չափազանցություն չի լինի,

եմն ասեմ, որ այն ժամանակ, երբ իմ ձեռքերը վերցնում են կնգուղները, ես այդ րոպեին նրանց չեմ նայում, այլ հաջորդ կընգուղներին։

Եվ ահա այդ օրը ես հավաքեցի 593 կիլոգրամ բամբակ։ Իմ և իմ ընկերուհիների փորձը ցույց է տալիս, որ յուրաքանչյուր չանաքավորի առաջ լայն հնարավորություններ կան ավելի շատ բամբակ հավաքելու համար։ Իմ այդ օրվա աշխատանքից հետո, օրինակ, հենց մեր օղակի անդամները սկսեցին ավելի շատ բամբակ հավաքել, քան մինչ այդ։ Այսպես օրինակ, Վերգուշ Էլոյանը, Ժենիկ Մեսրոբյանը, Ցոլիկ Հակոբյանը, Օֆիկ Հովսեփյանը, Ծաղիկ Մարտիրոսյանը այժմ օրական հավաքում են 190—200 կիլոգրամ բամբակ։ Օղակում օրական 150 կիլոգրամից պակաս բամբակ հավաքող չկա։ Մեր օղակի հավաքած բամբակը միայն ընտիր և առաջին տեսակի է։

Սեպտեմբերի 27-ին, ժամկետից մոտ մեկ ու կես ամիս առաջ մեր օղակը կատարեց բամբակի հանձնման իր պետական առաջադրանքը և այժմ հարազատ պետությանը բամբակ է հանձնում պլանից դուրս։

---

Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ
(Գյուղատնտես, ագիտատոր)

## ԲԱՐՁՐՈՐԱԿ ՀՈՒՄՔԻ ՀԱՄԱՐ

Դեռ մինչև բամբակի բերքահավաքի աշխատանքների սկսվելը մեր կոլխոզի պարտիական կազմակերպությունը, կոլխոզվարչությունը ագիտացիոն-մասսայական, բացատրական լայն աշխատանք էին ծավալել պետությանը բամբակի բարձրորակ հումք հանձնելու համար։ Կոլխոզնիկների հետ մեր ունեցած զրույցների ժամանակ մենք պատմում էինք Ալեքսանդր Չուտկիխի նախաձեռնության մասին, այդ նախաձեռնության խոշոր նշանակության մասին, այն մասին, թե ինչպես կիրառելով Չուտկիխի առաջարկությունը մեր գործարանների ու ֆաբրիկաների աշխատողները ձեռք են բերում խոշոր հաջողություններ արտադրանքի որակի բարձրացման գործում։ Այդ զրույցները մենք կապում էինք կոլխոզի, նրա բամբակագործների անելիքների հետ, պարզ օրինակներով ցույց տալով, որ բարձրորակ կտորեղեն արտադրելու համար ֆաբրիկաներին անհրաժեշտ է բարձրորակ հումք՝ բամբակ։

Այս ագիտացիոն-բացատրական աշխատանքի արդյունքները երևան եկան բամբակի բերքահավաքն սկսելու հենց առաջին օրերին։ Կոլխոզնիկները պայքարում էին պետությանը ընտիր և առաջին տեսակի բամբակ տալու համար։ Բայց պետք է ասել, որ հենց այդ առաջին օրերին էլ առանձին չանատքավորների և օղակների կողմից նկատվեցին լուրջ թերություններ։ Ընկնելով միայն քանակական ցուցանիշների ետևից, անքաթող անելով որակը, նրանք մեծ մասամբ տալիս էին երկրորդ տեսակի բամբակ։ Այն ժամանակ մենք մեր ագիտացիայի մեջ լուրջ ուշադրություն դարձրինք որակի վրա։ Զրույցներից մեկում ես ցույց տվեցի, որ երկու օրվա ընթացքում մենք հանձնել ենք օրական 7—8 տոննա երկրորդ տեսակի բամբակ, որը կազմում է հանձնած ամբողջ հումքի 30 տոկոսը։ Այդ խոշոր վնաս է պետության համար։ Սակայն դրանից մեծ վնաս է կրում նաև կոլխոզը։ Ի նկատի ունենալով, որ առաջին տեսակի բամբակի տոննան 300 ռուբլով ավելի արժե երկրորդ տեսակից, ստացվում է, որ այդ երկու օրը կոլխոզը մոտ 5.000 ռուբլու վնաս է կրել։ Եթե այդպես շարունակվի այս տարի երկրորդ տեսակի



բամբակ հանձնելու հետևանքով կոլխոզը մոտ 200 հազար ռուբլու վնաս կունենա։

Կոնկրետ թվերի վրա կազմված մեր այս զրույցները շոշափելի հետևանքներ ունեցան։ Կոլխոզնիկների կողմից երկրորդ տեսակի բամբակի հանձնումը որոշակի կերպով կրճատվեց, օրական իջնելով մինչև 0,5—1,5 տոննայի։

***

Ահա այսպես, մայր հայրենիքին ավելի շատ բամբակ տալու բուռն ցանկությամբ լցված անդուլ կերպով պայքարում են Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան կոլխոզի աշխատավորները, վստահ, որ պատվով կկատարեն իրենց պարտքը հարազատ պետության հանդեպ։

—○—

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԵՐԿԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒՆ ՉԵԽԵՐԵՆ ԵՎ ՍԼՈՎԱԿԵՐԵՆ

Ի. Վ. Ստալինի Երկերի ժողովածուի առաջին հատորը, որը լույս է տեսել չեխերեն լեզվով, հսկայական հետաքրքրություն է առաջացրել ոչ միայն կոմունիստական պարտիայի անդամների, այլև Չեխոսլովակիայի լայն հասարակայնության մեջ։ Սկզբում նախատեսված էր հրատարակել Ի. Վ. Ստալինի Երկերի ժողովածուն 100 հազար օրինակով, բայց այդ տիրաժը բավական չեղավ։ Չեխոսլովակիայի կոմպարտիայի Կենտկոմը այդ պատճառով որոշեց Ի. Վ. Ստալինի Երկերի ժողովածուի տիրաժը հասցնել 200 հազար օրինակի։

Սլովակիայի կոմունիստական պարտիայի Կենտկոմի նախաձեռնությամբ, Չեխոսլովակիայի կոմունիստական պարտիայի ղեկավարությունը որոշեց հրատարակել Ի. Վ.



Ստալինի Երկերի ժողովածուն նաև սլովակերեն։ Երկերի ժողովածուի առաջին հատորը սլովակերեն լեզվով լույս կտեսնի 1949 թվի դեկտեմբերին։

## ՌՈՒՄԻՆԻԱՅԻ ԱՌԱՋԻՆ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ

Ռումինական ժողովուրդը խանդավառությամբ քննարկում է երկրի առաջին հնգամյա պլանը։

Այդ պլանը ռումինական ժողովրդի առաջ բաց է անում մեծ հեռանկարներ։ 1955 թվին— առաջին հնգամյակի վերջին տարում —Ռումինիան կարտադրի մեկ միլիոն տոննա չուգուն և 1 միլիոն 250 հազար տոննա պողպատ, այն ժամանակ, երբ 1925—1935 թ. թ. ժամանակաշրջանում Ռումինիայում չուգունի տարեկան միջին արտադրությունը չէր անցնում 50 հազար տոննայից և պողպատինը՝ 100 հազար տոննայից։

1955 թվականին ածխի տարեկան հանույթը երկրում կհասնի 8 միլիոն տոննայի, այսինքն նախապատերազմյան մակարդակի հետ համեմատած կավելանա չորս անգամ։ Մեքենաների արտադրությունը հնգամյակի ընթացքում կկրկնապատկվի։ Զգալի չափով կաճի գյուղատնտեսական մեքենաշինու-

թյան և քիմիական պարարտանյութերի արտադրությունը։

Գյուղատնտեսական մեքենաների արտադրության աճը կապահովի գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման բարձր մակարդակը և երկրի գյուղատնտեսության արտադրության աճը, նյութական պայմաններ կստեղծի ռումինական գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման համար։

Հեռանկարային հնգամյա պլանը նախատեսում է 1955 թվականին ազգային եկամուտների կրկնապատկում և աշխատավորության կյանքի պայմանների բարելավման 80 տոկոս աճ։

---

## ՊԵՏԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՉՔԱՎՈՐ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻՆ

Լեհաստանի ժողովրդա-դեմոկրատական պետությունը ամեն տարի մեծաքանակ վարկեր է տրամադրում գյուղատնտեսական բանվորներին և չքավորներին։ Լեհաստանի Մինիստրների Սովետի Տնտեսական կոմիտեն նոր որոշում է ընդունել, որի համաձայն գյուղատնտեսական բանվորները և չքավորները տարվա ընթացքում լրացուցիչ կերպով կստանան մեկ միլիոն զլոտի վարկ։



Պետական նոր օգնությունը հազարավոր չքավոր գյուղացիների և գյուղատնտեսական բանվորների հնարավորություն կտա կովեր ձեռք բերելու։ Վարկը բաց է թողնվում հինգ տարի ժամանակով։

---

## ՆՈՐ ԵՐԿԱԹՈՒՂԱԳԻԾ

Մարեկե և Բոբով Դոլ քաղաքներում (Բուլղարիայի հարավ-արևմտյան մաս) տեղի ունեցան միտինգներ Մարեկե-Բոբով Դոլ նոր կառուցված երկաթուղագիծը շահագործման հանձնելու առթիվ։

Մոտ 20 կիլոմետր երկարություն ունեցող նոր երկաթուղագիծը ածուխով հարուստ բոբովդոլյան շրջանը կապեց երկրի երկաթուղային մագիստրալների հետ։

Ճանապարհի հանդիսավոր բացմանը ժամանել էր կառավարական դելեգացիա Բուլղարիայի ժողովրդական ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետի նախագահի տեղակալ Դոբրի Տերպեշևի գլխավորությամբ։

Նոր երկաթուղագծի կառուցումը, ինչպես նշեցին միտինգում բոլոր ելույթ ունեցողները, հնարավոր եղավ շնորհիվ եղբայրական Սովետական Միության կողմից անհրաժեշտ նյութերով ու սարքավորումներով ցույց տրված մեծարժեք օգնության։

Գինը 50 կոպ.

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*ՀԱՄԼԿԵՄ 11-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԵՐՆ ՈՒ ՓԱՍՏԱԹՂԹԵՐԸ։ Հայպետհրատ, 1949 թ. 94 էջ, գինը 1 ռուբլի։*

ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ։ Ընդունված ՀԼԿԵՄ 11-րդ համագումարի կողմից 1949 թ. ապրիլի 6-ին։ *38 էջ, գինը 50 կոպ.։*

---

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

---

*ՎՖ 03452 Պատվեր № 756 Տիրաժ 8.100*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 18 1949 г.